*Մոսկվա, 18 մայիսի։ Կրեմլի Համագումարների պալատ։ Պիոներական հանդիսավոր հավաքույթ՝ նվիրված Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության 50-ամյակին։*

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# «ՀՐԱՇՔՆԵՐԻ» ԵՐԵԿՈՆ

Քիմիայի երեկոյին հրավիրվածները դիտում էին ցուցատախտակները։ Ասես Հայաստան աշխարհի ամբողջ քիմիական արդյունաբերությունը ամփոփվել էր անոթների մեջ, նկարներում, ցուցանմուշներում։ Հայաստանի քիմիական արդյունաբերության մասին ամբողջական պատկերացում կազմելու համար մոտեցեք ցուցատախտակներին։ Սա շաքարի գործարանն է՝ իր պատմությամբ, արտադրության անհրաժեշտ նյութերով։ Իսկ սրանք Կիրովականի քիմկոմբինատն ու մանրաթելերի գործարաններն են։ Այստեղ ի թիվս բազում արտադրատեսակների, կան սովորական նյութերից ընտացված թանկարժեք քարեր, ապակիներ։

Արզնու ապակու և բյուրեղապակու գործարանը ներկայացնող ցուցատախտակը պատմում է, թե ինչից և ինչպես է այդ գործարանը ստանում ապակի, բյուրեղապակի։ Ալավերդու, Հրազդանի ու Սևանի հանքափորների աշխատանքի արդյո՞ւնքն է քեզ հետաքրքրում, մոտեցիր համապատասխան ցուցատախտակներին։

Եթե հնարավորություն չեք ունեցել այցելել Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմկոմբինատը, ալյումինի, ձեթ-օճառի, պոլիվինիլացետատ գործարանները, խնդրեմ, ամենակարճ ժամանակամիջոցն ու ամենալայն հնարավորությունները դրանց հետ ծանոթանալու համար՝ կարդա, ծանոթացիր, ուսումնասիրիր, տես, թե ինչ հրաշքներ կարող է գործել ամենազոր քիմիան փոշուց, ավազից, մետաղից, հեղուկից, ճարպից, սովորական ծիլ ու ծաղկից, լեռ ու քարից։

Ստացած բավականության համար շնորհակալություն պետք է



ՆԿԱՐՈՒՄ.— ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Վ. Պոդգոռնին Լենինի շքանշանն ամրացնում է պիոներական կազմակերպության դրոշին։ Դա երկրորդ Լենինի շքանշանն է, որին արժանանում է Սովետական Միության պիոներիան։

հայտնես քիմիայի խմբակի ղեկավար Վերա Ադամյանին, Մանկավարժական ինստիտուտի քիմիական ֆակուլտետի 4-րդ կուրսի ուսանողուհիներ Լարիսային, Սիլվային, Անթառամին, Զոյային, №56 դպրոցի դիրեկտոր Անժելա Չամանյանին և անպայման 9-րդ «բ» դասարանցի Դավիթ Սարգսյանին: Այդ բոլոր գեղեցիկ, համաչափ ու հավասար փրփրալյաստե տառերը նա է պատրաստել, ձևավորել ու կպցրել:

Այժմ տեսնենք, թե ինչ հրաշքներ են ցուցադրելու սպիտակ խալաթ հագած դպրոցականները: Բեմահարթակին դրված են սեղաններ՝ քիմիական նյութերով, փորձանոթներով, տարբեր բաղադրություններ պարունակող սրվակներով:

— Թանկագի՛ն հյուրեր, ուսուցիչնե՛ր, ծնողնե՛ր, ընկերնե՛ր, այսօր...

Կարինեն «հուզվում է», «շփոթվում»: Նստածներից մատիտ է խնդրում՝ իր ասելիքը գրավոր արտահայտելու համար: Մատիտի փոխարեն տալիս են... սրսկիչ: Ջուր է սրսկում գրատախտակին փակցված սպիտակ թղթի վրա: Հայտնվում են կարմիր տառեր՝ «Հրաշք երեկո»:

Անգույն թանաքով՝ ֆենոֆտալեյնի մեկ տոկոսանոց լուծույթով գրվածը ալկալիի փոխազդեցությունից մորու գույն ստացավ:

Կարինեն իր տեղը զիջում է երեկոն վարող Գայանեին:

— Այժմ ձեզ կծանոթացնենք մի շարք քիմիական միացություններից առաջացած երևույթների հետ, որոնք մի քանի տասնամյակ առաջ կարող էին հրաշագործություններ համարվել...

Սեղանի վրայի փորձանոթից իսկական հրաբուխներ են ժայթքում, ջրամանի մեջ տարբեր գույնի խարույկներ են բոցավառվում:

— Ո՞վ կարող է ստանալ կրակ, առանց սովորական միջոցների,— Գայանեն դիմում է դահլիճում նստածներին:

Ձեռք են բարձրացնում խմբակի բոլոր անդամները: Նրանցից միայն մեկը պետք է կատարի փորձը: Հրավիրվում է Անուշը: Նա երկաթյա թիթեղի վրա մանուշակագույն փոշի է լցնում, վրան կաթեցնում անգույն հեղուկ: Լույսերը մարում են: Խառնուրդը բոցավառվում է: Մի ուրիշը՝ Աղավնին բացատրում է, որ մանուշա-

# ՀՈԳՍԵՐՍ

ՎԱՀԱՆ ՄԽԱԿՅԱՆ

Արդեն երրորդ օրն էր, անընդհատ չարչարվում էի: Գրքերս ու տետրերս էի կարգի բերում: Պատերազմի տարիներին դա հեշտ բան չէր: Քույրս էլ էր օգնում ինձ: Նա գործածված այբբենարանի պոկված-պատռված թերթերն էր կարում, կարգավորում: Զգում էի, որ այնքան էլ խնամքով չի կատարում, բայց դե, ինչ արած: Ինքս, եթե ուզենայի էլ, նրանից լավ չէի անի: Հետո ես էլ պարապ չէի, ավելի դժվար գործի էի:

Չգիտեմ, թե որ ժամանակի տետրեր էին: Քույրս ոգևորում էր ինձ, ասելով, որ իրենք բոլորն էլ այդպիսի տետրերում են գրել ու բոլորն էլ գերազանցիկ են դարձել: Տետրի յուրաքանչյուր էջ արդեն մեկ անգամ ջնջվել ու գրվել էր: Ես երկրորդ անգամ էի մաքրում, իսկ դա տառապալից աշխատանք էր:

Ռետինն էլ այնքան փոքր էր, ռետինն էլ էր դըժվար ճարվում, ինչպես տետրն ու դասագիրքը: Ես ավելի շատ մատներով էի մաքրում: Իսկ մատներս չէին դիմանում: Մի երկու անգամ ետ ու առաջ տանելուց հետո այրվում էին: Ստիպված դադարներով էի աշխատում: Տետրերի թերթերը տեղ-տեղ ծակծըկված էին, իսկ իմ մաքրելուց հետո դրանց թիվը ավելանում էր: Երևի այնքան էլ հեշտ չէր աշխատանքս, բայց ես համառորեն մաքրում էի ու մեկ-մեկ աչքի տակով հետևում քրոջս:

— Այդ ի՞նչ ես անում,—չհամբերեցի ես,—այդքան մեծ-մեծ կկարե՞ն:

— Վերնաշապիկ հո չե՞մ կարում քեզ համար,—չի զիջում քույրս,—պետք է թերթես, իսկ դրա համար այս էլ բավական է:

Ես համամիտ չէի, բայց խոհեմություն համարեցի չզայրացնել նրան:

## ԵՐԿԸՆՏՐԱՆՔ

Որքան էլ հետաքրքիր լինեին դասերը, ես չէի ուզում դպրոց գնալ, և դա իր լուրջ պատճառն ուներ: Դպրոց հաճախելով՝ ես զրկվելու էի մի հաճելի պարտականությունից: Մինչ այդ սպաս խառնելու գործը ինձ էր վստահված: Մինչև սպասի եռալն ու եփվելը, ես հաճելի պահեր էի ունենում: Ստամոքսս դատարկ չէր նվում և տոզած փորով խաղալը այնքա՜ն լավ էր: Բայց հիմա՞: Է՜հ, համեմատելն իսկ դժվար է, և ավելի դժվար է այդ մասին մայրիկին ասելը: Առայժմ դասի չգնալս պատճառաբանում եմ նրանով, որ ինձ վատ եմ զգում, այսինքն՝ «հիվանդ» եմ:

Լավ էր, որ մայրիկը շատ էր զբաղված կոլտընտեսության ու տան աշխատանքներով, թե չէ սուտ հիվանդանալուս համար ինձ մի լավ կղնգսեր:

Երրորդ օրն էր, ինչ ես դասի չէի գնում ու, թոնրաշրթին բազմած, մտել էի սիրածս դերի մեջ: Բորբոքում էի կրակը, սպասի մակերեսի վրա առաջին թույլ պղպջակներն էին երևում: Ահա սկսեց

---

*կագույն փոշին կալիումի պերմանգանատն է, որի վրա լցվեց գլիցերին: Վերջինիս ազդեցությամբ կալիումի պերմանգանատը քայքայվում է, տալով ատոմական ակտիվ թթվածին, որը այրում է գլիցերինին:*

*Խմբակի անդամներ Սարգիսը, Թամարան, Մարինեն, Արևիկը, պիոներական խարույկ են ստանում քիմիական նյութերից, առանց կրակի այրում, ածխացնում շաքարը, բուժօգնություն ցույց տալիս «տուժվածին», զվարճացնում քիմիական «նախաճաշով», շաքարից ջերմություն ստանում, ապա բանաստեղծություններ արտասանում:*

*Անվտանգ փորձերին հաջորդում են վտանգավորները: Ղեկավար Վերա Ադամյանի անհանգըստությունը հասկանալի է՝ փորձերի ժամանակ միշտ ինքը նրանց կողքին է եղել, նախ ինքն է փորձել, իսկ այժմ դարձել է հարյուրավոր հանդիսատեսներից մեկն ու լարված հետևում է, որ հանկարծ սխալ թույլ չտան, որ չըսրտդողեն ու հաջող անցնի մասսայական քննությունը: Անհանգըստանում են նաև մանկավարժականի ուսանողները, որոնք ցուցահանդեսի կազմակերպմանն ու պարապմունքների ընթացքում անմիջական օգնություն են ցույց տվել: Երկու ամիս մանկավարժական փորձառության շրջան են անցել, դարձել կոլեկտիվի անդամ: Արդեն ավարտել են գործնական պարապմունքները: Դրա համար էլ վտանգավոր փորձերից հետո «Հրաշք երեկոն» դառնում է նաև հրաժեշտի երեկո: Ուսմասվար Գալուստ Նիկողոսյանը շնորհակալության ջերմ խոսքեր է ասում ապագա մանկավարժներին, կանաչ ճանապարհ ու բարի ցանկություններ մաղթում: Խմբակի անդամները ծաղկեփնջերով են արտահայտում իրենց երախտագիտությունը: Ինստիտուտի դասախոսներ Ռազմիկ Իսպիրյանն ու Լևոն Կարապետյանը գոհ են իրենց ուսանողներից: Բայց քանի որ նրանք ավարտական կուրսում են և շուտով հրաժեշտ կտան ինստիտուտին, դիմում է խմբակի անդամներին.*

*— Շնորհակալություն հրաշալի երեկոյի համար, սիրելի՛ դպրոցականներ: Շարունակեք ուսումը մեր ֆակուլտետում, դարձեք քիմիայի նորանոր հրաշքները իրականացնողներ:*

*Ա. ՀԱԿՈԲՅԱՆ*





եռալ, ու ես արդեն տարերքի մեջ եմ: Այնքան էլ հեշտ չէ թոնրից ելնող ծուխ ու բոցի մեջ անընդհատ սպաս խառնելը, բայց ես այնքան եմ վարպետացել, որ ձախ ձեռքիս գդալով հասցնում եմ բավականին հաճախ համտես անել:

Մեկ էլ շեմքին, ծխի միջից, ուրվագծվում է իմ դասատուի դեմքը: Անակնկալի եկած՝ քարանում եմ տեղումս ու չեմ հասցնում նետվել անկյուն: Ընկեր Սիրունյանը նախատում է ինձ, ասում, որ անպայման դասի գնամ:

Ճար չունեի, շարունակեցի դպրոց հաճախել:

### ԳԼԽԱՐԿԸ

Միակ բանը, որ ցրտերն ընկնելուց հետո ավելացել էր իմ համազգեստին, մի գլխարկ էր: Դասարանում իմ գլխարկի շուրջն արդեն արկածներ էին հյուսվել:

Գլխարկս մեծ էր ու կախվում էր մինչև ականջներիս վրա: Չնայած մի քանիսի կարծիքով դա շատ տգեղ էր, բայց ինձ համար տաք էր ու հարմար: Տնից դուրս գալիս գլուխս թաքցնում էի գլխարկիս մեջ ու մինչև դասարան ոտաբոբիկ վազում:

Դասարանում գլխարկս փոխում էր իր դերը և դառնում ոտնաման: Ուսուցչուհին էլ չէր բարկանում վրաս ու երբեմն թույլատրում էր տեղից պատասխանել:

Սկզբում գլխարկիս ծառայությունից օգտվում էի միայն ես: Բայց մի օր Գագիկը դասի ժամանակ սկսեց լաց լինել: Քանի որ մենք միևնույն նստարանին էինք նստում, նախ ես նկատեցի: Հարցի պատճառը, ոչինչ չասաց: Աչքերը սրբելուց հետո, սկսեց ոտքերը շփել: Նայեցի ոտքերին. կապտած էին ու տրեխներից դուրս ելած:

Մայրիկն ասել էր, որ նրա հայրիկի «սև թուղթն» էլ է եկել: Քանի որ նրա հայրիկն էլ իմ հայրիկի նման զոհվել էր, որոշեցի անպայման օգնել: Ոտքերս հանելով գլխարկից, գլխարկը հրեցի նրա կողմը:

— Ոտքերդ դիր մեջը,— ասացի ես:

— Չեմ ուզում,— հրաժարվեց նա:

Ես պնդեցի, և նա համաձայնեց:

Այդ օրվանից գլխարկիս ծառայությունից օգտվում էինք երկուսով:

### ԱՂԵՏ

Լալան, Վարդգեսն ու Վռամը գլուխները իրար մոտեցրած, երկար դասամիջոցին քչփչում էին: Լալան դարձավ մեզ.

— Նորի՛կ, Գագի՛կ, եկե՛ք, բան եմ ասում:

Սովորաբար մեզնից մեկն էր դուրս գալիս տեղից: Թե չէ գլխարկը կառչեր ու նորից տաքացնելու համար երկար ժամանակ էր պետք: Այդ կարևոր հանգամանքը մոռանալով, երկուսս էլ մոտեցանք նրանց:

— Ուշադիր նայեք այստե՛ղ,— ասաց Լալան ու, վերցնելով տետրի մաքուր թերթը, սկսեց գծել:

Ես շատ էի ուզում Գագիկից առաջ ըմբռնել նրա ասածը և լարված հետևում էի ձեռքի շարժմանը: Բայց նրա անկապ խոսքերից ու ավելի անկապ գծերից ոչինչ չէր հասկացվում:

Դասարանը աղմկեց միանգամից: Երկուսս էլ շրջվեցինք: Լալան զրնգուն ծիծաղով հեռու փախավ: Օդի մեջ մեր գլխարկն էր՝ ավելի շուտ իմ գլխարկը: Վռամն ու Վարդգեսը նրանով ֆուտբոլ էին խաղում: Մինչև մեր հասնելը, մյուսներն էլ մեջ ընկան ու սկսեցին ոչ թե խաղալ, այլ քաշքշել իրարից:

Լսվեց մի թույլ ճրթոց, ու պատռված գլխարկը մնաց Վռամի ձեռքերում: Անմիջապես մոտեցա սըփըրթնած Վռամին:

— Ի՞նչ արիր,— զայրացած հարցնում եմ ես:

— Ես... ես...— ու դողալով պապանձվում է:

Կոկորդովս խոնավության նման մի բան էր բարձրանում: Գլխարկս վերցրի նրա ձեռքից ու նըստելով տեղս, սկսեցի հեկեկալ: Մեկն էլ էր լալիս իմ կողքին. Գագիկն էր:

## ՀԱ՛ՆՈՒՆ ՀԱՅՐԵ՛ՆԻՔԻ

ԳԵՎՈՐԳ ԶԱՐԵՆՑ

Երբ մեր երկրի վրա
Պատերազմը պայթեց ահեղ ռումբի նման,
Մենք մանուկներ էինք՝
Այս աշխարհի բոլոր մանուկների նման:
Հետո միանգամից ասես հասունացանք,
Դեռ պատանի չեղած՝ մենք տղամարդ դարձանք:
Մեր հայրերի ցանած արտը հնձել էր պետք,
Մենք հնձվորներ դարձանք,
Նրանց կիսատ վարած դաշտը վարել էր պետք,
Մենք մաճկալներ դարձանք,
Հերկը ցանել էր պետք,
Մենք սերմնացան դարձանք,
Այգին փորել էր պետք,
Մենք այգեպան դարձանք:
Երբ մենք հողը հերկում, այգի էինք փորում,
Թվում էր, թե հեռո՜ւ-հեռո՜ւ ռազմի դաշտում
Խրամատ ենք փորում մեր հայրերի համար:
Երբ կարկուտը դաժան սարում, դաշտում, հանդում
Մեր ուսերն էր թակում,
Թվում էր՝ մեզ վրա թշնամին էր անգութ
Գնդակներն իր թափում...
Այդպես կռվում էինք առանց փառանմունքի,
Մեր շուրթերին նույնպես, ինչպես մեր հայրերի,
Նույն խոսքն էր միշտ հնչում՝
Հանուն հայրենիքի:



Նայեցեք Էստոնիայի պետական դրոշին: Կապույտ ալիքներ են վետվետում նրա վրա, խորհրդանշելով Բալթիկ ծովը:

Ծովը մեծ դեր է խաղում էստոնացիների կյանքում: Ամեն օր նավահանգիստներից դուրս են գալիս տասնյակ ձկնորսական ու առևտրական նավեր, շատ ուրիշ նավեր էլ

# ԷՍՏՈՆԱԿԱՆ ՍՍՀ

ցամաքի հետ կապում են էստոնական 800 մեծ ու փոքր կղզիները:

Էստոնիան հարթավայրային երկիր է: Այստեղ ամենաբարձր կետը Սաուր-Մունամյագի բլուրն է՝ ծովի մակերևույթից 318 մետր բարձրությամբ:

Էստոնիայի մայրաքաղաք Տալլինը հայտնի է իր միջնադարյան կառույցներով, իսկ հանրապետության երկրորդ քաղաք Տարտուում է գտնվում մեր երկրի հնագույն համալսարաններից մեկը: Այստեղ է սովորել հայ մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանը, որ իր ուսուցչի՝ էստոնացի պրոֆեսոր Պարրոտի հետ առաջինը բարձրացավ Արարատ լեռան գագաթը:

Էստոնիան մեծ չէ ոչ իր տարածությամբ՝ 45,1 հազար քառ. կմ, ոչ իր բնակչության թվով՝ մոտ 1,5 միլիոն մարդ: Բայց աշխատասեր էստոնացի ժողովուրդը սովետական իշխանության տարիներին, եղբայրական մյուս հանրապետությունների օգնությամբ, Էստոնիան դարձել է զարգացած, հյուրընկալ ու ծաղկուն երկիր:



## ՔԱՅԼՈՒՄ Է ԱՄԱՌԸ

ՕԼԻՎԻԱ ՍԱԱՐ

Արդեն մորին կարմրել, մորու համ ունի,
Կղզում տաք ու կենարար արևն է փայլում,
Վայրի մեխակն է ծաղկել, նաև մասրենին,
Եղեգնուտով ոսկեշող ամառն է քայլում:

Ավազներում առափնյա քարերը նստած,
Ճերմա՛կ-ճերմա՛կ են ինչպես ժամանակը ծեր.
Կեչիների շարքերը ջրին կռացած,
Ուսով հենվել են իրար, որ չընկնեն կարծես:

Քամին քնել է մուշ-մուշ, իսկ ծովը անփույթ
Մեկնվել է, ոչ մի տեղ չունի գնալու:
Միայն շոգն է օրորվում ջրերին կապույտ,
Խաղաղության երգն է դա անդորրում այս լուռ:






Մեր այս համարի հյուրն է էստոնական «Պիոները»՝ Էստոնացի պիոներների սիրելի ամսագիրը: Ստորև տպագրված նյութերը գրել ու նկարազարդել են էստոնացի գրողներն ու նկարիչները:

# ՄԱՐԴԻԿ ՆԱՅՈՒՄ ԵՆ ԾՈՎԻՆ

ԴԵԲՈՐԱ ՎԱՐԱՆԴԻ

Երբ հորիզոնում շոգ ցերեկների
Ծխի սյուներն է ամառն օրորում,
Երբ որ վնգում են աշտարակների
Քարե շարքերը օրվա ժխորում,
Երբ շոգեքարշի վնգոցն է խրվում
Տարածության մեջ անհատակ ու խուլ,
Քաղաքի մարդիկ ծովափ են գալիս
Ու նայում ծովին՝
Մտասույզ ու լուռ:

Կանչում է ծովը ամենքին սիրով,
Իր գաղտնիքներով հատակում պահած,
Հունիսյան փափուկ երեկոներով
Եվ առավոտով աշնան դեղնամած,
Գորշ անդորրությամբ աշնանավերջի,
Աշնանավերջի թախծոտ լռությամբ,
Նայում են մարդիկ ծովին անրջող
Իրենց անուրջի անվերջ խորությամբ:

Եվ իրիկնային մշուշի միջից,
Շողերի տեղակ արևի հանգած,
Ես ստվերներ եմ տեսնում մարդկային՝
Ժայռակողերին լույսի պես ընկած:
Եվ հարազատ են մարդիկ ինձ դառնում
Իրենց խոհերի պարզությամբ խորին,
Երբ ջրերի հետ զրույց են անում՝
Լուռ հայացքները պարզելով ծովին:

Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Նկ. ՀԵԼԴԱՐ ԼԱՐԵՏԵԻ

# ԵՂԵԳՆՈՒՏՈՎ

Օդը կանգնած է այսօր, ասես քարացած,
Լոկ թռչուններն են սուրում ինչպես մակույկներ:
Իսկ ծովափով, չգիտես ումից նեղացած,
Բադիկ մայրիկն է քայլում՝ վիզը պարզած վեր:

Մի՛ վախենա, թռչնա՛կ իմ, ամառն այս խաղաղ
Չի վրդովվի երբևէ ոչ մի չար ձեռքով:
Փոքրիկ հողին այս դեռ շա՛տ արև կշողա,
Փառաբանել պետք է միշտ նրան նոր երգով:

Արդեն մորին կարմրել, մորու համ ունի,
Եղեգնուտով ոսկեշող ամառն է քայլում:
Եվ լռությունը այս խոր, զովը ծովափին
Խուժում են սիրտը մարդու, հոգին կմայլում:

Թարգմ Ս. ՄԿՐՏՉՅԱՆԻ

# ՎԵՃԸ

ՀԵՅՆՈ ՎՅԱԼԻ

Մեծը բռնել էր փոքրի ձեռքը։

Երկուսն էլ քամու դեմ կռացած էին գնում։ Բայց քանի որ փոքրիկը մեջքը մեծին էր արել և երկուսն էլ համառորեն տարբեր կողմեր էին նայում, դժվար չէր հասկանալ, որ նրանք վիճել ու խռովել են իրարից։

Քայլում էին լուռ, իսկ քամին քաշքշում էր նրանց փեշերից։ Փոքրիկի դեմքը տանջված ու տխուր էր, իսկ մեծինը՝ անըմբռնելի ու ինքնամփոփ։

— Հայրի՛կ,— վերջապես ասաց Կիրստին,— իմ կարծիքով դու վատ հայրիկ ես։

— Հա՞,— պատասխանեց հայրը, նույնիսկ գլուխը չշրջելով։

— Այո-ո-ո՛,— հառաչեց Կիրստին։— Եվ նաև չար հայրիկ ես... Մի գլուխ խոսում ես վրաս... Խոսում ես ու խոսում։

— Իսկապե՞ս...— անտարբեր պատասխանեց հայրը։

— Դու նաև ծեծում ես ինձ։

— Քեզ պետք է ավելի շատ ծեծել,— համոզված ասաց հայրը։— Որովհետև դու վատ, փչացած երեխա ես։

Քրքրված ու փրչոտ ամպերի արանքից նայեց արևը։ Աշխարհի դեմքը պայծառացավ։ Բայց արևը երկար չմնաց. ամպերը նորից ծածկեցին նրան, և ցածր երկնակամարն ավելի խոժոռվեց։

— Հայրի՛կ, ես չեմ ուզում, որ ձեռքս բռնես,— ասաց Կիրստին։

Հայրը լուռ բաց թողեց փոքրիկ աղջկա ձեռքը։

Հիմա նրանց ձեռքերը գրպաններում էին։ Առաջ գնալը հեշտացավ, և նրանք լայն քայլեր էին գցում։

— Այո-ո-ո՛,— հառաչեց Կիրստին։

Քամի էր փչում։ Այդ պատճառով էլ հայրը չլսեց դստեր հառաչանքը։ Եվ Կիրստին նորից հառաչեց։ Ավելի բարձր։

Միևնույն է, նրան չլսեցին։

— Ավելի լավ չի՞ ես քո մոտից գնամ,— ասում է Կիրստին, մի աչքով հետևելով հորը և քիթը վեր քաշելով։

— Դա ի՛նքդ որոշիր,— անտարբեր ասաց հայրը և նույնիսկ չնայեց նրան։

Կիրստին փղձկաց.

— Այո՛, երևի ավելի լավ է գնամ։

Պատասխան չեղավ։

— Ֆրիդի մորաքույրը երբեք վրաս չի խոսում։ Քեռի Արվոն՝ նույնպես։ Նրանք ասում են, որ ես լավն եմ։

— Որովհետև նրանք չգիտեն, որ դու կոտրել ես իրենց ափսեները։

Կիրստին երկար լռեց։

— Երբ ես կոտրեցի նրանց հայելին, նրանք չխոսեցին վրաս։ Նրանք ասացին, որ ես դա պատահաբար եմ արել։

— Ճիշտ է։ Նրանք հույս ունեին, որ դու կգիտակցես քո մեղքը և կխելոքանաս։

Երկուսն էլ լռեցին։

— Իսկ չի՞ լինի, եթե չգնամ մորաքույր Ֆրիդիի և քեռի Արվոյի մոտ։

— Դա արդեն դո՛ւ որոշիր։

Երկնակամարով քաշ էր գալիս ցածր կախված ամպի պոչը։ Անձրև էր մաղում։

Ճանապարհորդները փշաքաղվեցին և ձեռքերն ավելի խորը խրեցին գրպանները։ Նրանք իրար հետ ոչ մի գործ չունեին և միմյանց թվում էին վատ ու անարդարացի։

— Ավելի լավ է քեռի Օսկարի մոտ գնամ,— վերջապես ասաց Կիրստին։

— Քեռի Օսկարը իր աղջկան ունի,— պատասխանեց հայրը։— Փոքրիկ Վեստեն, որի տիկնիկը խլեցիր, ու նա լաց եղավ։

Հիմա Կիրստին մտածելու բան ուներ։

— Գուցե քեռի Յուհանի մոտ գնաս,— քիչ հետո խորհուրդ տըվեց հայրը։— Հուսանք, որ քեռի Յուհանը մոռացել է, թե նախանցյալ օրը դու ինչ անհարմար բան ասացիր նրան։

Կիրստին գլուխը կորցրել էր երկընտրանքներից։ Նա քիթը վեր քաշելով նայում էր ոտքերին, իսկ հետո թաց աչքերով հորը նայեց։ Բայց սա այնքան բարկացկոտ ու համառ հայր էր, որ մինչև անգամ չպատասխանեց այդ հայացքին։

— Մի՞թե ես այդքան վատն եմ,— լաց եղավ Կիրստին։

— Դու այդ ավելի լավ կիմանաս,— հոգոց հանեց հայրը։

Անձրև էր մաղում։ Փչում էր ուժեղ քամի։

Կիրստին դժբախտ էր։

Նա դանդաղեցրեց քայլերը և ետ մնաց հորից։

Հայրը գնաց առաջ, իսկ Կիրստին մնաց կանգնած։

Նա կանգնել էր մայթի մեջտեղում, մեջքով դեպի հայրը և նրա աչքերը նույնքան թաց էին ու տխուր, որքան նրան շրջապատող մոխրագույն աշխարհը։ Աշխարհը նրան անարդարացի էր թվում, և նա խղճաց իրեն։ Բայց նա մեջքով էր կանգնած դեպի հայրը և մտքով չէր էլ անցնում շրջվել։

Այդպես նա երկար, շատ երկար կանգնեց և միակ մխիթարությունը այն էր, որ հայրը չի խոսում իր վրա, նույնիսկ չի նըկատում և շարունակում է ճանապարհը։ Ավելի ու ավելի էր հեռանում հայրը, այդ վատ ու անարդարացի հայրիկը, որը Կիրնտիի վրա նույնիսկ ա՛յ, այսքան ուշադրություն չէր դարձնում, թեև Կիրստին մենակ էր

մնացել: Հայրը հեռանում էր: «Այսպես նույնիսկ ավելի լավ է»,— մտածեց Կիրստին և գուցե հենց այդ պատճառով լաց եղավ: Բայց նա միևնույն է, շուտ չեկավ: Եթե անելու ուրիշ բան չի մնացել, բացի հեռանալուց, էլ ի՞նչ միտք ունի ետ նայել:

Բայց ճանապարհ գնացողը պետք է նպատակ ունենա, իմանա, թե ուր է գնում: Իսկ ո՞ւր պետք է գնար Կիրստին: Աղջիկը վեր քաշեց քիթը ու ետ նայեց:

Հայրը ոչ մի տեղ չէր գնացել: Նա կանգնած էր մայթին:

Հիմա Կիրստին գիտեր, թե ուր պետք է գնա:

— Դեռ շա՞տ պետք է սպասեմ քեզ,— հարցրեց հայրը:

Կիրստին չպատասխանեց: Հետո ասաց.

— Ես կհեռանամ: Կգնամ գյուղ, պապիկի մոտ:

— Իսկապե՞ս,— զարմացավ հայրը:— Այդ ինչպե՞ս կգնաս:

— Ավտոբուսով,— պատասխանեց Կիրստին:— Գյուղական ավտոբուսով:

— Գյուղական ավտոբուսը այս փողոցով չի գնում,— ասաց հայրը:— Իսկ պապիկը ինձ ասել է, որ դու թքել ես նրանց ջրհորի մեջ:

Նրանք կանգնել ու լռում էին. մեկն՝ այստեղ, մյուսը՝ քիչ հեռու:

Անձրևը դեռ մաղում էր: Քամին քաշում էր նրանց փեշերից, բայց նրանք, թվում էր, ոչ մի ուշադրություն չէին դարձնում դրա վրա:

Կիրստին վերջապես շարժվեց տեղից: Նա մոտեցավ հորը, և նրանք միասին քայլեցին առաջ: Այս երկար կանգառից հետո ճանապարհը շարունակում էին լայն քայլերով: Իսկ ձեռքերը նորից գրպաններում էին: Եվ դրա շնորհիվ ավելի հեշտ էր քայլել:

Նրանք քայլում էին լուռ, որովհետև առանց այդ էլ շատ էին խոսել: Բայց նրանց դեմքերը, այնուամենայնիվ մտածկոտ էին:

— Այո-ո-ո՜...— ասաց Կիրստին: Նա հառաչեց ու շարունակեց.

— Քո կաշվե կազմով գրքի մեջ մի փիսիկ կա:

Հայրը ոչինչ չասաց, դրա համար էլ Կիրստին բացատրեց.

— Այդ փիսիկը ես եմ նկարել:

Բայց քանի որ հայրը դարձյալ լուռ էր, նա ավելացրեց.

— Ախր ինձ արգելված էր ձեռք տալ այդ կաշվե կազմով գրքին:

Դա միանգամայն ճիշտ էր: Եվ Կիրստին չհասկացավ, թե ինչու հայրը նույնիսկ հիմա իր հետ չի խոսում:

— Իսկ քո վկայականի վրա լուսանկար չկա,— ավելացրեց նա տագնապով,— ես այն պոկել եմ, ու հիմա դրված է քո սեղանին, թղթի տակ:

Բայց հայրը այս անգամ էլ ոչ մի բառ չասաց, և Կիրստին այնպես վախեցավ այդ լռությունից, որ նրա աչքերի անկյունները թրջվեցին: Նա ասաց.

— Ահա այս պատճառով էլ ես չեմ կարող գալ նաև քեզ հետ:

Հայրը լուռ էր, իսկ քիչ հետո ասաց.

— Ինձ հետ գալ կարող ես:

Եվ նրանք գնացին: Եվ կարծես թե անձրևը նույնպես դադարեց:

— Բայց, հայրի՛կ,— հանկարծ հարցրեց Կիրստին,— ինչպե՞ս, կարո՞ղ եմ գալ քեզ հետ: Ուրեմն ոչի՞նչ, որ...

Նա զարմացած աչքերով նայեց հորը: Հայրն էլ իր հերթին նայեց նրան ճիշտ այդպիսի աչքերով ու չգիտեր, թե ինչ ասի...

*Ռուս. թարգմ. ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



Նկ. ԱՍՏԱ ՎԱՆԴԵՐԻ



# ԲԱԽՏՍ ԴԱՐՁՅԱԼ ՉԲԵՐԵՑ

## («ԵՐԿՐՈՐԴ ԿՅԱՆՔ» ԳՐՔԻՑ)

*ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ*

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

Մենք այդպես էլ չիմացանք, թե ինչ հիվանդությունից մեռավ իմ հայրը, որ ընդամենը երեսունհինգ տարեկան էր: Տատս կենդանի չէր, որ օգներ որդուն իր բարակ, խորշոմած մատներով: Խառակոնիսում բժիշկ չկար, և բոլոր ներքին հիվանդությունները համարվում էին սանջու...

Տարիներ հետո, երբ ես իմացա, թե ինչ բան է կույր աղիքը, հասկացա, որ հայրս հիվանդացած է եղել կույր աղիքի բորբոքումով և Խառակոնիսի սանջու բռնողները, նրա որովայնը տրորելով, պայթեցրել էին բորբոքված կույր աղիքը, թույնը տարածել էին մարմնի մեջ և թունավորել մարդուն: Այս գիտակցությունը շարունակ նորոգում ու կրկնապատկում էր իմ վիշտը: Չէ՞ որ եթե լիներ Խառակոնիսում բժիշկ ու վիրահատություն, հայրս կարող էր չմեռնել այդքան երիտասարդ:

Այդ տարին անցավ ինձ համար ծանր մղձավանջների ու երազների մեջ: Ես տեսնում էի հորս առողջ ու պարթևահասակ, Մկրտչի Գյուլիզարի աղունը շալակով ջրաղաց տանելիս: Ես տեսնում էի նրան ձիթհանքում փոխինձ աղալիս: Ես տեսնում էի նրան քրդի սև եզան հետ Վանից վերադառնալիս: Ես տեսնում էի նրան ոտքերը Գյուլիզարի երդիկից կախած, շների հետ գրույց անելիս. «Մի՛ հաչեք ինձ վրա...» ...Ես տեսնում էի նրան զայրացած բացականչելիս. «Վարժատուն մի՛ գնա, ես դրանց»... Եվ վերջապես ես տեսնում էի նրան լեզուն կապված, անօգնական, տառապանքների մեջ մեռնելիս... Ծանր բան է հայր կորցնել, երբ դու ընդամենը տասներկու տարեկան ես:

Աշնանը մեր դպրոցը պատրաստվում էր նոր ներկայացում տալու: Պիտի խաղայինք այս անգամ «Վարդանանց պատերազմ»: Խառակոնիսի ղեկավարները այս ներկայացմանն ավելի մեծ կարևորություն էին տալիս, և դերեր վերցրին մի քանի պատվավոր մեծահասակներ: Վարդան Մամիկոնյանի ‘դերը վերցրեց պարոն Արամ Խանճյանը, Վանից եկած մեր նոր ուսուցիչը, որ փոխարինում էր նախկին պարոն Արամին: Վահան Ամատունու դերը վերցրեց ռես-Շիրինի եղբայր պարոն Հրանտը: Իսկ Ղևոնդ երեցի դերը պիտի

խաղար ուղղակի տեր-Մարտիրոսը: Վարդանի դերից հետո երկրորդ պատասխանատուն Վասակի դերն էր, որի խոսքերը դարձյալ շատ էին, և մեր գյուղում ոչ մի մեծահասակ սիրտ չարեց անգիր սովորել:

Վասակի դերը տվին ինձ: Չնայած ես փոքր էի և Վարդանի, Վահանի ու Ղևոնդ երեցի կողքին հազիվ էի երևում: «Ավելի լավ,— ասում էին դպրոցի ղեկավարները,— դավաճան Վասակի համար էդ բոյն էլ բավական է»:

Փորձերին հաճախ մասնակցում էր պարոն Շիրինը: Նա ինձ մի տեղ «ուղղեց» և հարկադրեց վերցնել սխալ եղանակ: Վասակը, իր դավաճանությունը խարազանող մի հայուհու խոսքերից ընկճված, բացականչում է. «Լռի՛ր, լռի՛ր, թշվառակա՜ն կին»... Ես այդ խոսքերն ասում էի ցավի, ամոթի և հուսահատության շեշտով, իսկ Շիրինը պահանջեց, որ ես այդ խոսքերն արտասանեմ իշխանական գոռոզությամբ: Ես հասկանում էի, որ պարոն Շիրինը սխալվում է, բայց նրան առարկելու հանդգնություն չունեցա: Մանավանդ որ պարոն Արամն ու տեր-Մարտիրոսը նրա հետ համաձայնեցին:

Տեր-Մարտիրոսն ի վերջո տեսավ, որ դերասանությունն անհարիր է իր հոգևոր դիրքին և հրաժարվեց Ղևոնդ երեցի դերից: Այդ կարևոր դերը հանձնեցին Նշան Դադոյանին, որ մեր դպրոցում հայտնի էր իբրև խելոք և ընդունակ տղա: Վանից բերած գույնզգույն ճոթեղեններով մեզ համար իշխանական շորեր կարեցին: Պարոն Խանճյանը փայլուն թղթերից շքեղ սաղավարտներ սարքեց Վարդանի և հայոց նախարարների համար: Ներկայացումից մի քանի օր առաջ, նա բոլոր դերակատարներին հագցրեց ու դուրս բերեց ժամտան բլուրի վրա:

Աշնան պայծառ առավոտ էր, և մեր երփներանգ խումբը երևում էր Խառակոնիսի բոլոր թաղերից: Այդ կենդանի ռեկլամը կախարդական տպավորություն գործեց գյուղի վրա: Քիչ հետո ժամտան բլուրը ծածկվեց երկսեռ գյուղացիների բազմությամբ: Բավականաչափ մոտենալ չէին համարձակվում, որովհետև պարոն Խանճյանը կարգադրել էր նայել միայն հեռվից: Խառակոնիսցիք տենչավառ հետաքրքրությամբ իրար հարցնում էին.

— Ծո տղա՛, Վարդան Մամիկոնյանը ո՞րն է...

— Ծո տղա՛, Վասակը ո՞րն է...

Պարոն Խանճյանը կարգադրեց, որ մենք ներս վերադառնանք, որովհետև այդքանն արդեն բավական էր հանդիսականների հետաքրքրությունը շարժելու համար:

Ես տապակվում էի հակոտնյա զգացմունքների մեջ: Ուրախ էի, որ հագել եմ իշխանական շորեր, գլխիս դրել եմ փայլուն սաղավարտ և խաղում եմ հայոց մարզպանի դերը: Բայց, ախար, այդ մարզպանը դավաճան Վասակ Սյունեցին էր... Է՜հ... փուչ բախտ ունեմ, էլի՜: «Արցունքի հովտում» ինձ բաժին ընկավ կնկա դեր, «Վարդանանց պատերազմում»—դավաճանի դեր: Այնինչ ես ինչպե՜ս կուզենայի խաղալ Վարդան Մամիկոնյան: Չէ՞ որ դա մանկությանս երազանքն էր և, ճիշտն ասած, պարոն Խանճյանը լավ էլ չէր խաղում Վարդանի դերը: Խոսքերը, հայրենասիրական կրակոտ խոսքերը նրա բերանում փսորվում էին, ինչպես պարոն Մանվելի խանութից գնված էժանագին ծամոն... Ա՜խ, ես ինչպե՜ս կարտասանեի այդ խոսքերը: Սակայն սրտի ցավով հասկանում էի, որ իմ հասակը Վարդան Մամիկոնյան խաղալու հասակ չէր: Հայոց պանծալի սպարապետը չէր կարող բեմ բարձրանալ 12 տարեկան տղայի լխպոր կերպարանքով: Իմ տարիքը չէր սազում նաև դավաճան Վասակին: Բայց Խառակոնիսի ղեկավարները վճռեցին, որ Վասակը Վարդանի առաջ պետք է նսեմանա նաև իր թզուկ հասակով: Ես մի կողմից նրանց հետ համաձայն էի, մյուս կողմից այրվում էի ամոթից, որ ինձ վիճակված է դավաճան խաղալ: Այդպես է աղքատ որբ տղայի բախտը:

Ներկայացումը Խառակոնիսում փայլատակեց ինչպես անպատմելի հրաշք: Մենք բեմի վրա ցույց տվինք Ավարայրի ճակատամարտը: Հայոց ու պարսից բանակները կանգնեցին դեմ դիմաց և սկսեցին իրար շպրտել պայթուցիկ բենգալյան կրակներ: Խառակոնիսցիք հիացմունքից և ազգային հպարտության ըզգացմունքից խելագարվել էին, և նրանց մտքով չէր անցնում, որ այդ ժամանակ հրազեններ չկային և բանակներն իրար հետ կռվում էին տեգերով, նետերով, նիզակներով...

Բեմը ճարճատում էր կրակոցներից, խայտում էր լույսերի և ծխի մշուշում, դղրդում էր երկու կողմից նետվող մարտական գոռում-գոչյուններից: Իսկ դահլիճում հանդիսականները ծափահարում էին և աղաղակում.

— Կեցցե՜ քաջ Վարդան Մամիկոնյանը...

— Կեցցե՜ հայ ազգը...

— Կեցցե՜ ազատությունը...

— Կորչի՜ դավաճան Վասակը...

«Կորչի դավաճան Վասակը»... Այդ «կորչին» ես ինձ էի վերագրում և խորապես վիրավորվում էի: Իհարկե, գտան գյուղում աղքատ ու որբ մի տղա, որ դարձնեն դավաճան Վասակ: Այդ միտքը չարչարում էր իմ ուղեղը: Չնայած՝ հասկանում էի, որ Խառակոնիսում ինձանից բացի ոչ ոք չէր կարող Վասակ խաղալ, և ես բոլորի խոստովանությամբ լավ էի խաղում:

Պարոն Խանճյանն ընկավ մի ծանր ու ծիծաղելի վիճակի մեջ: Իբրև Վարդան Մամիկոնյան՝ նա պետք է կռվի դաշտում քաջի մահով ընկներ և ընկավ: Բայց նրա կողմը նետված բենգալյան կրակը փոխանակ նրա կուրծքը խոցելու, խանձել էր նրա մորուքը, որ սկսեց վառվել: Քաջի մահով մեռած Վարդանը ճա-

րահատյալ վեր կացավ և ռազմական վերարկուի քըղանցքով հանգցրեց իր մորուքի բոցը: Ես ինձ հազիվ զսպեցի, որ չփռթկամ: Իսկ դահլիճից կանայք փըռթկալու փոխարեն կարեկցանքով բացականչեցին.

— Վա՜խ, վա՜խ, վա՜խ...

Ներկայացումից հետո մի ամիս շարունակ պարոն Խանճյանն իր ծնոտը կապում էր սպիտակ թանզիֆով:

Պարոն Արամը, պարոն Աբրահամը, պարոն Հրանտը, տեր-Մարտիրոսը, տեր-Սահակը, ռես-Պետրոսը, պարոն Անդրեասը և մինչև անգամ ռես-Շիրինը զանազան առիթներով ինձ գովում էին և ասում, թե Վասակի դերը լավ եմ խաղացել: Պզկի Պողոսը ինձ գովելու համար հատկապես մեր տունը եկավ և ասաց, որ չի հանգստանա, մինչև որ Խառակոնիսի հաշվին ինձ չուղարկի ճեմարան կամ Ներսիսյան դպրոց:

Բայց և այնպես դավաճանի դեր խաղալն ինձ վրա թանկ նստեց: Ներկայացումից մի շաբաթ հետո ռես-Միրզոյի տանը ջանիման եղավ: Ես ու Դադոյի Նշանը ջանիմանի տեղից միասին դուրս եկանք: Տան երկար միջանցքում հանդիպեցինք Բոբոյի Մարանին, որ մեր գյուղի ամենասիրուն աղջիկներից մեկն էր: Նշանը նրա գլուխը բռնեց ու թշերը համբուրեց: Ես նախանձից գլուխս կորցրի և ասացի.

— Սպասիր ես նրա եղբորը հայտնե՜մ...

Նշանը վախեցավ և պատասխանեց.

— Հայտնի՛ր, դավաճա՜ն: Ոզուր չխաղացիր Վասակի դերը...

Ես խոցվեցի մինչև սրտիս խորքերը: Իհարկե ես Մարանի եղբորը բան չէի ասի: Հապա ինչո՞ւ այդքան ստոր սպառնալիք տվի Նշանին: Հետագայում ես նկատեցի, որ դա իմ բնավորության վատ կողմերից մեկն էր, սպառնալ, երբ գիտեի, որ սպառնալիքը չեմ կատարի, երևալ ավելի վատ, քան կամ իրականում:

## ՇՏԱՊ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ

ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Կա մի լավ աղջիկ,
Անունը՝ Ալիս,
Միշտ էլ պատրաստ է
Նա դասի գալիս:
Իր հետ բերում է
Ամեն, ամեն ինչ՝
Մատիտ ու կարկին,
Վրձին ու գրիչ:
Թե մեկը հանկարծ
Գրիչ չի բերել,
Մյուսը իր հետ
Սրիչ չի բերել,
Կամ մեկ ուրիշին
Ծայր է պետք գալիս,
Թեքվում են իսկույն
Ու կանչում՝ Ալի՜ս...
Իսկ Ալիսը, դե,
Չի մերժում երբեք,
Հանում է արագ
Ու տալիս մեկ-մեկ:
Հո աղջիկ չի՞ նա,
Տեղով բարություն,
Կանչում են նրան
«Շտապ օգնություն»:





# ԿԱՄԱԿՈՐ

ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ

Մուկուչը աննպատակ թափառում էր այգում: Իսկ տանը նրան էին սպասում անպատրաստ դասերը և անհանգիստ տատիկը: Կամաց-կամաց մութը ընկավ: Այգին սկսեց դատարկվել: Գրքերի կրպակը փակեցին: Տուն գնացին ջերմոցի աշխատողները: Տուն գնացին պարան խաղացող երեխաները, իսկ Մուկուչը թափառում էր: Չէր ուզում տուն գնալ, որ ստիպված չլինի դասերը սովորել: Ծերուկ պահակը արդեն ուզում էր փակել այգու դուռը, երբ նկատեց Մուկուչին:

— Ա՛յ տղա,— դիմեց նա Մուկուչին— շուտ դո՛ւրս եկ այգուց:

— Ես դեռ ուզում եմ ման գալ,— ասաց Մուկուչը:

— Այսինքն ինչպե՞ս թե «ուզում եմ»,— զայրացավ պահակը,— ժամանակն է այգու դուռը փակելու:

— Չեմ գնա, ի՞նչ պիտի անես:

— Հիմա կտեսնես...

Պահակը, այն է, ուզում էր բռնել, Մուկուչը թռավ ցանկապատի վրա և ձեռքերով ու ոտքերով ամուր կառչեց ցանկապատից:

Պահակը կանչեց մոտակա պահակակետի միլիցիոներին: Միլիցիոները իրար խփեց կրունկները ու պատվի առնելով, դիմեց Մուկուչին.

— Ա՛յ տղա, անմիջապե՛ս դուրս եկ այգուց: Դու խանգարում ես կարգը:

Մուկուչը շարունակում էր լուռ կառչած մնալ ցանկապատին: Միլիցիոները և պահակը զարմացած նայեցին համառ տղային: Հետո նրանք երկուսով սկսեցին քաշքշել Մուկուչին, բայց ոչինչ չստացվեց: Ցանկապատի մոտով անցնում էր ակնոցավոր մի մարդ:



# ՄՈՒԿՈՒՉԸ

*Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

— Այդ ի՞նչ եք անում,—զարմացած հարցրեց նա:

— Այս համառ տղային ոչ մի կերպ չենք կարողանում իջեցնել ցանկապատից, մինչդեռ այգին փակելու ժամանակն է:

— Թողեք ես փորձեմ,— ասաց ակնոցավորը,— մի ժամանակ ես սպորտով էի զբաղվում:

Երեք տղամարդ քաշում էին նրան և չէին կարողանում պոկել ցանկապատից:

Ցանկապատին մոտեցավ ծանր ատլետիկայի չեմպիոնը:

Չեմպիոնը արհամարհանքով նայեց Մուկուչին, հետո քաշեց նրան մեկ ձեռքով... Մուկուչը տեղից չշարժվեց: Չեմպիոնը զարմացավ: Նա ձիգ տվեց երկու ձեռքով... դեմքը կարմրել էր, քրտնել, գլխարկը թեքվել էր մի կողմ, բայց իզուր. նա չկարողացավ համառ տղային պոկել ցանկապատից:

— Սա իմ առաջին պարտությունն է,— փնթփնթաց չեմպիոնը և զայրացած թողեց ու գնաց:

Մուկուչը շարունակում էր կախված մնալ: Արդեն բոլորովին մութ էր: Վառվեցին փողոցի լապտերները: Միլիցիոները ստիպված մոտեցավ հեռախոսախցիկին ու ինչ-որ տեղ զանգահարեց:

Շուտով ցանկապատին մոտեցան չորս բանվորներ: Երկուսը մի կողմից, երկուսը մյուս կողմից սկսեցին սղոցել չուգունե ձողերը: Վերջապես ցանկապատի այն մասը, որից կախված էր Մուկուչը, անջատվեց: Նրանք, հոծ բազմության ուղեկցությամբ, հանդիսավորապես Մուկուչին տարան տուն, որ դասերը սովորի:

# ԵՐԳԻԾԱԿԱՆ ՄԱՆՐԱՊԱՏՈՒՄՆԵՐ

Ժողովրդական երգիծանքի ստորև տպագրվող հատընտիր նմուշները հատուկ մեր ամսագրի համար, բանահյուսական՝ բանավոր, ձեռագիր և տպագիր աղբյուրներից քաղել և գրական լեզվով վերաշարադրել է ՀԳ ակադեմիայի թղթակից-անդամ Ա. Ղանալանյանը:



## 1. ՀՈԲՈՍՆ ՈՒ ՍՊԻՏԱԿ ԱՅԾԸ

Հոբոսի արտը հինգ-վեց այծ են մտնում, որոնցից ամենափոքրը սպիտակ է լինում: Բարկացած Հոբոսը գնում բռնում է այդ սպիտակ այծին և մի լավ թակելով նրան, ասում է. «Տո՛, անիրա՜վ, ամենք թե այս մյուս այծերը ջահել են, խելքները չի հասնում, դու պառավ, մազ ու մորուքդ սպիտակած, չե՞ս մտածում, որ սա ուրիշի արտ է, ո՞նց ես մտել ներս ու արածում ես, քո հե՞րն է ցանել, թե՞ դու»:



## 2. ՔՆԿՈՏ ՎԱՀԱՆԸ

Գյուղացի Վահանը էշով քաղաք է գնում՝ մածուն ծախելու: Ծախում պրծնում է, վերադառնում է գյուղ: Ճանապարհին, էշի վրա նստած, քունը տանում է... Վահանը շատ բարձրահասակ մարդ է լինում, ոտները դեմ են առնում գետնին, էշը տակից անցնում, գնում

է, ինքը մնում է ճանապարհին, ուղիղ կանգնած... Հանկարծ կարթնում է, տեսնում է էշը չկա... Գալիս է գյուղ, տեսնում է էշն իրենից առաջ տուն է եկել:



## 3. ՊՈՒՂԻՆ ԵՎ ՀԱՐԵՎԱՆԸ

Պուղու հարևաններից մեկը մի օր գալիս է մոտը և ասում.

— Էշդ տուր, ցորենս ջրաղաց տանեմ:

— Էշս տանը չէ, տանը լիներ կտայի,— պատասխանում է Պուղին:

Նրանց խոսակցության ժամանակ հանկարծ էշն ախոռում կռռում է:

— Բա ասում էիր էշդ տանը չի՞,— դիմելով Պուղուն՝ ասում է հարևանը:

— Է՜,— ասում է Պուղին հարևանին,— կարմանալի մարդ ես եղել, ինձ չե՞ս հավատում, իշի՞ն ես հավատում:



## 4. ՊԱՊԻ ԵՎ ԹՈՌԱՆ ԽՈՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

— Պապի՛, պապի՛... քնե՞լ ես, ինչ է,— հարցնում է թոռը պապին:

— Չէ՛, չէ՛, չեմ քնել,— պատասխանում է պապը:

— Դե որ չես քնել՝ ինձ մի ռուբլի փո՛ղ տուր, գրնդակ պիտի առնեմ:

— Հա՛, հա՛, քնել եմ, քնել, ինձ ձայն մի՛ տա...— ասում է պապը և շուռ է գալիս դեպի պատը:



## 5. ԳՆՉՈՒՆ ՈՒ ՊՈՒՂԻՆ

Իշատեր մի գնչու ասում է Պուղուն.

— Պուղի՛ ջան, Պուղի՛, որդուս կարդալ-գրել կսովորեցնե՞ս:

— Ամսական 30 ռուբլի վարձ կառնեմ,— ասում է Պուղին:

— Ի՞նչ ես ասում, ա՛յ մարդ, 30 ռուբլով մի էշ կգնեմ:

— Գնա՛, գնա գնի՛ր,— պատասխանում է Պուղին,— այն ժամանակ դու մեկի տեղ երկու էշ կունենաս:



## 6. ԻՆՔՆ ԻՐԵՆ ՄԽԻԹԱՐՈՂ ԿՐԻԱՆ

Մի կրիա յոթ տարի շարունակ փորձեր էր անում, որ ծառը բարձրանա: Երբ տեսավ, որ իր աշխատանքը կուր է անցնում, ինքն իրեն մխիթարելու համար ասաց. «Թո՛ւ... անիծված լինի շտապ գործը»:



## 7. ՄՈԾԱԿՆ ՈՒ ՈՒՂՏԸ

Գարունը բացվելուն պես, մոծակը ուղտին ասում է.

— Ո՛ւղտ ախպեր, մնաս բարով, տունդ շեն լինի, ես քոչում եմ:

Ուղտն ասում է.

— Ես՝ ո՞վ, դու՝ ո՞վ, ես քեզ ի՞նչ լավություն եմ արել:

Մոծակը, թե.

— Ամբողջ ձմեռը քո ականջում ծվարել եմ:

Ուղտը, թե.

— Ո՛չ գալուցդ լուր ունեմ, ո՛չ գնալուցդ:

(Շարունակելի)

*Ճանաչի՛ր հայրենի բնաշխարհը*

# ՀԱՅԿԱԿԱՆ ԻԺ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ



Այդպես էլ կոչվում է միջազգային կենդանաբանական գրականության մեջ, որովհետև սողունի այս տեսակը շատ տարածված է Հայկական բարձրավանդակում: Հայաստանին սահմանակից երկրներից բացի, հայկական իժը տարածված է նաև Սիրիայում, Լիբանանում, Իսրայելում: Լինում է նաև Ստամբուլի շրջակայքում: Մեր հանրապետությունում հանդիպում է Փոքր Կովկասի հարավային լեռնալանջերին, սկսած՝ Աղինից մինչև Մեղրի և Ղափան:

Սիրում է արևկող ու քարքարոտ լանջեր,— ուրեմն և ջերմասեր է ավելի, քան իր ցեղակիցներից շատերը,— բայց և լեռնային կարելի է անվանել, որովհետև չի իջնում երկրի ցածրադիր, հետևաբար շոգ վայրերը. մեզ մոտ ծովի մակերևույթից 1200—1400 մետրից ցած չի հանդիպում, լինում է մինչև 3000 մետր բարձունքներում:

Դրան հակառակ, իր մյուս ցեղակիցը՝ գյուրզան 1500 մետրից վեր՝ դեպի լեռները չի բարձրանում: Այդպիսով, ուր վերջանում է գյուրզայի տիրապետության գոտին, այնտեղից էլ հայկական իժի տիրապետության շրջանն է սկսվում: Կարծես թե մեր երկրի այդ ամենաթունավոր և ամենահզոր սողունները իրենց միջև բաժանել են երկիրը և յուրաքանչյուրն իր «կալվածքում» տեր ու տիրական է: Թերևս դա այդպես էլ լինի, քանի որ նկատված է՝ գյուրզան իր բնակած վայրերից հալածում է այլ տեսակի օձերին: Այդպիսով, եթե գյուրզան հանդիպում է Գառնու Գողթ գյուղից ոչ վերև և այդտեղ վերջանում է նրա տիրապետության սահմանը, ապա հայկական իժը սկսում է հանդիպել նրանից վերև՝ Գեղարդի լանջերին: Նախալեռնային շրջաններում նրա տարածման հյուսիսային սահմանները համարվում են՝ Աշտարակի շրջանում Անտառուտն ու Սաղմոսավանը, Հրազդանի շրջանում՝ Արզականի հանդերը և այլն:

Այս իժը նախընտրում է աղքատ ու չորասեր բուսականություն ունեցող կիսաանապատային վայրեր, սիրում է ժայռեր, թփուտներ, քարքարուտներ: Մինչդեռ իժը Ռուսաստանում բավական տարածված է նույնիսկ ճահիճներում:

Մեզ մոտ, իհարկե, ապրում է նաև անտառներում, բայց ինչպիսի՞ անտառներում. քարքարոտ, նոսր, ո՛չ մեծածառ, մանավանդ, եթե անտառը գիհի է: Մարդկային շեներից իրեն հեռու է պահում, վերևներում է, բարձրերում, հաճախ անասնապահական ֆերմաների յայլաղներում կամ նրանց սահմաններում:

Ի՞նչ տեսք ունի հայկական իժը: Հաստ ու խոշոր օձ է: Կենդանաբանական հին գրքերում (Նիկոլսկի, Ռադդե, Բրեմ) ասված է, որ այդ օձը ունի մինչև 74—75 սմ երկարություն: Սակայն հետագայում հանդիպեցին ավելի խոշորները, և քառասնական թվականներին օձագետները նրա երկարությունն արդեն հաշվում էին մինչև 10 սմ: Սա մեր երկրում հանդիպող իժերի չափն է: Այլ երկրներում, օրինակ, Պաղեստինում, հայկական իժը շատ ավելի խոշոր է, քան իսկական իժերի մի շարք տեսակները: Պոչը շատ է կարճ, դունչը կլորավուն է, գլուխը վերևից ծածկված է մանր թեփուկներով՝ նման մարմնի թեփուկներին: Թիկունքի կողմից գույնը բաց-թուխ է լինում կամ գորշ: Եվ ահա այդ ֆոնի վրա կլոր, բաց նարնջագույն կամ դարչնանարնջագույն խալերի մի երկա՛ր շարք գնում է ողնաշարի երկարությամբ: Յուրաքանչյուր կողքով նույնպես թուխ գծերի միմի շարք է գնում: Փորի տակը դեղնավուն է՝ ծածկված կուզահեռ գնացող սև և ճերմակ բծերով:

Ինչպես տեսնում եք, բավական խայտաբղետ սողուն է հայկական իժը:

Սնվում է մանր կրծողներով, թռչուններով, շատ որսում է մանավանդ մորեխի կանայան տեսակներ: Ուսումնասիրված չէ, քանի որ թաքուն, գիշերային կյանք է վարում: Այնքան է միայն հայտնի, որ արևը մայր մտնելուց հետո որսի է դուրս գալիս և աշխույժ գործունեության մեջ է միայն գիշերվա առաջին կեսին: Երկրորդ կեսին, երբ օդի ջերմաստիճանն իջնում է, ակտիվությունը կորցնում է մինչև առավոտ: Լույսը բացվելուց հետո նորից աշխուժանում է, բայց կարճ ժամանակով, որից հետո ցերեկվա ընթացքում հաճախ ժամերով մնում է անշարժ:

Հայտնի է նաև, որ բնույթը խաղաղ է, եթե չեն կայրացնում: Մարդու վրա հարձակվում է միայն այն դեպքում, երբ ոտքի տակ է ընկնում կամ շատ մոտ լինելով՝ վտանգ է զգում նրա կողմից: Երբ մարդն է հարձակվում վրան՝ կատաղի պաշտպանվում է: Բայց բոլոր դեպքերում էլ չի նետվում դեպի մարդը և չի հետապնդում փախչողին: Երկու օձագետ՝ Վ. Գրուբանը և Ա. Ռուդաևան Աշտարակի շրջանի Անտառուտ գյուղի հանդում հանդիպել են հայկական իժերի և ասում են, որ սրանք շատ զգույշ ու վախկոտ սողուններ են: Իժը հանդիպել է նրանց իր բնին շատ մոտ և իսկույն ծլկել:

Իժերն ամեն աշնան հավաքվում են ժայռերի խորը ճեղքերի մեջ և ձմռան քուն են մտնում մեծ խմբերով:

Որջից դուրս են սողում մայիսին, տաքանում են արևի տակ, զուգավորվում են և ցրիվ գալիս, այլևս նրանց խմբերով չես հանդիպի:

Օգոստոսին ծնում են 4—5 կենդանի ձագ՝ ըստ Դալի, իսկ ըստ Ռիխտերի՝ մինչև 9 ձագ: Սակայն հետագայում պարզվեց, որ հայկական իժը ավելի պտղաբեր է, քան կարծում են: Անտառուտի հանդից բռնված մայր իժերից մեկի որովայնում գտնըվել է 10, իսկ մյուսում 13 ձու: Ձագերն ունենում են 13—14 սմ երկարություն և ծնվելուն պես շատ աշխույժ ու ակտիվ արարածներ են: Նրանք կարող են նույնիսկ կծել և թունավորել մարդկանց ու կենդանիների: Երևի օձի ձագի թունավոր լինելը հնում էլ հայտնի է եղել մարդկանց, թյլապես մեր նախնիք նենգ ու չարահոգի տղայի մասին չէին ասի. «Օձի ձագ է, օձի՛...»

Դե որ ձագը ծնվելուն պես կարող է խայթել ու թունավորել, պատկերացրեք, թե ի՞նչ թույն կունենան նրա ծնողները:

Եվ իրոք, գյուրզայից հետո, հայկական իժը ամենաթունավորն է մեր երկրի օձերի մեջ: Դեպքեր կան, երբ նրա խայթոցից ընտանի խոշոր անասունները ուռել-սատկել են:





# Մ Ն Ջ Ա Խ Ա Ղ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*

Մնջախաղ, ասել է թե՝ լուռ խաղ, առանց խոսքի խաղ, ուր ամեն ինչ արտահայտվում է շարժումով, կեցվածքով, դիմախաղով: Հունարեն «պանտոմիմ» բառն էլ (որ հայերեն շատ հաջող թարգմանվում է՝ մնջախաղ) հենց նշանակում է «ամեն ինչ նմանությամբ վերարտադրող»:

Շատ հնից, դարերի խորքից է գալիս մնջախաղի արվեստը: Արևելքում՝ հատկապես Հնդկաստանում ու Չինաստանում, և Արևմուտքում՝ Հունաստանում ու Հռոմում, շատ՝ հարգի է եղել այդ արվեստը և ունեցել է հմուտ վարպետներ: Դարերի ընթացքում ինչ-ինչ փոփոխություններ կրելով, այդ արվեստը հասել է մինչև մեր ժամանակները: Դրա ամենահայտնի վարպետն է Չառլի Չապլինը՝ համր կինոարվեստի մեծագույն արտիստը: Ինչքա՜ն ենք ծիծաղել ու տրտմել նրա հմայիչ հերոսի արարքները տեսնելով: Հապա մտածեք, թե առանց մի հատիկ խոսքի նա ինչպես է կարողանում այդքան բան ասել, այդքան հուզել և ուրախացնել մեզ, այդքան խոսուն, ավելի ճիշտ՝ այդքան պերճախոս լինել:

Իհարկե, Չառլի Չապլինին օգնում են կինոարվեստի արտահայտչական միջոցները, որոնց նա,— լինելով իր կինոնկարների նաև սցենարիստը, ռեժիսորը և նույնիսկ՝ կոմպոզիտորը,— տիրապետում է կատարելապես:

Բայց լինում են մնջախաղի վարպետներ, որ հանդես են գալիս առանց որևէ օգնության՝ իրենք են ու դատարկ բեմը: Մնջախաղի այդպիսի արտիստ է, կամ, ինչպես ասում են՝ միմոս է Մարսել Մարսոն՝ ֆրանսիացի նշանավոր արտիստը, որ մի քանի տարի առաջ ելույթներ է ունեցել Երևանում: Ասենք, նա ուզում է պատկերել քամուն հակառակ գնացող մարդուն: Երևակայական քամուն ընդառաջ գնացող արտիստի մկաններն այնպես են լարվում, շարժումներն այնպես են դժվարանում, մարդն այնպես է ընկրկում տարերքի ուժի առաջ, որ ուզում ես վրա հասնել, օգնել նրան: Կամ մեկ ուրիշ օրինակ՝ արտիստն ինչպես է արտահայտում բանտ նետված մարդու տառապանքը և ազատության անդիմադրելի տենչանքը: Նա պատեպատ է ընկնում, ելք է որոնում, բայց ուր ձեռքը գցում է, հանդիպում է անխորտակելի պատնեշի: Եվ դիտողի առաջ «երևում» են բանտը, նրա խոնավ պատերը, երկաթե ցանցը, ավելի իրական, ավելի տպավորիչ, քան իրականը կարող էր երևալ: Խորին կարեկցանք է առաջացնում անելանելի խցում ազատություն կերպով ելք որոնող մարդը:

Այսպիսի տպավորություն է թողնում մնջախաղը, երբ տեսնում ես այդ արվեստի ճշմարիտ վարպետին: Մնջախաղի այդպիսի մի վարպետ է Լեոնիդ Ենգիբարյանը, գուցե և լավագույնը մեր երկրում: Մի անգամ նա և Մարսել Մարսոն Լեհաստանում հանդիպել են և տեսել միմյանց արվեստը: «Դուք բոլորովին ուրիշ եք»,— ասել է Մարսել Մարսոն իր հայ արվեստակցին: Իսկապես, Ենգիբարյանը տարբեր է ֆրանսիացի արտիստից և՛ արտաքինով, և՛ արտահայտման ձևերով: Ենգիբարյանը, ի տարբերություն

## ԾԱՏՈՒՐԻ ԵՐԱԶԸ

*ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ*

Գիշեր է: Քամին սուլում է դրսում,
Ծատուրը քնել, երազ է տեսնում,
Որ ինքը, իբր, հովիվ է սարի
Ու հանդիպել է երկու գայլերի:
Շները վախից փախել գնացել,
Մենակ գայլերն ու ինքն են մնացել:
Բայց չվախեցրեց այդ բանը նրան.
Իսկույն հարձակվեց գայլերի վրա,
Մեկին մահակով գետին տապալեց,
Մյուսի բկից բռնեց գյուղ բերեց:
Հանկարծ արթնացավ, մութ էր սենյակում,
Մեկը ոռնում էր, կատուն թակում...
— Գայլերը եկա՜ն,— ճչաց Ծատուրը:
Այնինչ անձրևն էր թակում կտուրը...

ֆրանսիացի արվեստակցի, հանդես է գալիս առանց դիմակի և առանձին նշանակություն է տալիս դիմախաղին: Գլխին փոքրիկ շլյապա, որը հաճախ է գործի դրվում, հագնված շատ թեթև, որ լավ երևան իր վտիտ, բայց կարմանալիորեն ճկուն մարմնի բոլոր շարժումները, թախծոտ ժըպիտը դեմքին՝ Ենգիբարյանը բեմ կամ կրկեսի արենա է մտնում պատմելու իր հերոսի մասին. նրա գլխին եկած փորձանքների և այն հոգեկան ուժի մասին, որով նա հաղթահարում է հանդիպած դըժվարությունները: Այդ հերոսն ունի լավ սիրտ, ազնիվ ձգտումներ, ըզգայուն հոգի, բայց բախտը նրան այնքան էլ չի ժպտում: Այդպիսի մարդ է «Ապակի վաճառողը», «Վարորդը», «Քեզ մոտ գալու ճանապարհին» և ուրիշ մնջախաղային մանրապատումների հերոսը: Եվ իր մունջ խաղով արտիստը ցույց է տալիս, թե ինչպես է նա հրճվում ու տխրում, բարկանում, հուսահատվում, ոգևորվում, արտասվում... կզացմունքների մի ամբողջ համակարգ: Ոչ միայն ցույց է տալիս, այլև դիտողին համակում, վարակում է նույն կզացմունքներով, իսկ դա ամեն մի արվեստի գլխավոր հատկանիշն է: Եվ այս ամենը միայն շարժման, կեցվածքի, դիմախաղի շնորհիվ, սեփական մարմնին, մնջախաղի արտահայտչական լեզվին անթերի տիրապետելու շնորհիվ:

Իրոք, շատ տպավորիչ է մընջախաղի արվեստը, երբ տեսնում ես դրա իսկական վարպետին, ինչպիսին Ենգիբարյանն է: Մի բազմափորձ ռուս քննադատ այսպես է գրել նրա մասին. «Այն կես դարում, ինչ ես կրկես եմ հաճախել իբրև հանդիսատես, չեմ կարող մտաբերել մի ծաղրածուի, որ լիներ այնքան նուրբ ու գեղեցիկ և միաժամանակ ծիծաղելի, ինչպես Լեոնիդ Ենգիբարյանը»:




# ԾԱՂԿԵ ԺԱՄԱՑՈՒՅՑ

Տարբեր ծաղիկներ բացվում են օրվա տարբեր ժամերին: Մեկը՝ վաղ առավոտյան, մյուսը՝ ցերեկվա շոգ ժամերին: Երրորդը ցերեկը փակվում է, բացվում միայն երեկոյան: Որոշ տեսակի ծաղիկներ էլ բացվում են գիշերը:

Եթե մենք մանրակրկիտ կերպով ուսումնասիրենք մեր շրջապատում աճող բոլոր ծաղիկները, նշենք դրանց բացվելու ճշգրիտ ժամկետները, ապա կարելի է ծաղկաբույսերը այնպես դասավորել, որ օրվա բոլոր ժամերին բացվող տեսակներ լինեն: Հաճախ այս եղանակով «ծաղկե ժամացույցներ» կոչվող ծաղկաթմբեր են պատրաստում, որտեղ տարբեր ժամերին բացվող բույսերը կարող են ցույց տալ մոտավոր ժամանակը:

Այսպես օրինակ, առավոտյան ժամը 4—5-ին բացվում են սովորական մասուրը և ճարճատուկը: Ժամը 5-ից սկսում է բացվել սովորական կակաչը: Խատուտիկի ծաղիկները սովորաբար բացվում են ժամը 5—6-ը ընկած ժամանակամիջոցում: Կարտոֆիլը և կտավհատը բացվում են ժամը 7-ին: Մոտավորապես կես ժամ հետո բացվում է սպիտակ ջրաշուշանը: Ժամը 9-ին բացվում են ծվծվուկի և նարգիզի կարմրավուն և նարընջագույն ծաղիկները: Գիշերային մանուշակի գեղեցիկ, սպիտակ ծաղիկները բացվում են երեկոյան ժամը 19-ից 20-ին: Էլ ավելի ուշ է բացվում հոտավետ ծխախոտը, որի սպիտակ, բուրավետ ծաղիկները ըսկըսում են բացվել երեկոյան ժամը 20-ից 21-ին:

Վերջին երկուսը բացվում են ամբողջ գիշերվա ընթացքում և փակվում են կեսգիշերից հետո՝ ժամը 2-ից 3-ին: Գիշերն է բացվում նաև գիշերային գեղեցկուհի կոչված ծաղիկը:



# ԵՐԿՈՒ ՀԱՆՃԱՐ

## ՀՐԱՇՔ ԵՐԵԽԱ

Ավստրիացի մեծ կոմպոզիտոր Վոլֆգանգ Ամադեյ Մոցարտը (1756—1791) ծնվել է պալատական երաժշտի ընտանիքում: Նրա հայրը՝ Լեոպոլդ Մոցարտը ջութակահար էր, երգեհոնահար, մանկավարժ և կոմպոզիտոր: Նա էլ հենց եղել է Վոլֆգանգի առաջին ուսուցիչը: Վոլֆգանգը կարմանալի ընդունակությունների տեր երեխա էր: Նա նվագում ու ստեղծագործում էր երեք տարեկան հասակից, չորս տարեկան հասակում գրել է կոնցերտ կլավեսինի համար, իսկ 11 տարեկանում իր առաջին օպերան:

Ահա մի դեպք նրա կյանքից:

Վոլֆգանգը երեք տարեկան էր: Նրա քույրը՝ Մարի-Աննան յոթ:

Մի անգամ նրանց հայրն ասաց աղջկան:

— Մարի՛, դու արդեն մեծ ես, և ես ուզում եմ քեզ երաժշտության դասեր տալ: Դու ընդունակ ու խելոք աղջիկ ես: Բայց երաժշտություն սովորելու համար դա բավական չէ: Պետք է մեծ ջանասիրություն այս դժվարին, բայց ազնիվ գործում հաջողության հասնելու համար: Դե՛, սկըսենք:

— Ի՜նձ էլ, ի՜նձ էլ,— գոգից թափելով խաղալիքները, հարևան սենյակից վազելով գալիս է Վոլֆգանգը:

— Ա՜խ, պստի՜կս, դու դեռ շատ ես պստիկ: Քո հասակն այնքան կարճ է, որ դու դեռ կարող ես վըռնել կլավեսինի տակ:

Եվ էլ ուշադրություն չդարձրեց նրա վրա:

Մեծ համբերությամբ ու սիրով հայրն սկսեց իր առաջին դասը: Մարին ուշադիր լսում էր: Հետո փորձեց հոր օգնությամբ վերարտադրել այն, ինչ քիչ առաջ նվագել էր հայրը: Դժվար է: Բայց պայծառ մեղեդին արդեն գերել էր աղջկան, և նա, լարած իր բոլոր ուժերը, ջանում էր հաղթահարել այն:

Մյուս օրը, երբ հայրը տուն մտավ, նրա ականջին հասան դաշնամուրի հնչյուններ: Նա բացեց սենյակի դուռն ու քարացավ շեմքին:

Դաշնամուրի առջև նստած էր երեքամյա Վոլֆգանգն ու անսխալ նվագում էր երեկվա մեղեդին:

Ինչպես ցույց է տալիս գրաֆիկը, ծաղիկների մեծ մասի բացվելը ավարտվում է երեկոյան կողմ: Միայն առանձին ծաղիկներ են շարունակում բացվել մինչև ուշ երեկո (սպիտակ ջրաշուշան, ծվծվուկ և այլն):

Ինչո՞ւ ծաղիկները տարբեր ժամերի են բացվում: Կենսաբանական ի՞նչ առանձնահատկություն է դա: Ծաղիկների մեծ մասը հարմարվել են տարբեր միջատների միջոցով փոշոտվելուն: Այդ միջատների մի մասը իրենց ակտիվ գործակցությունը սկսում են լուսաբացին, մյուսները՝ կեսօրին, երեկոյան և այլն: Որոշ միջատներ էլ գիշերային կյանք են վարում: Յուրաքանչյուր ծաղիկ բացվում է այն ժամին, երբ սովորաբար հայտնվում են նրան փոշոտող միջատները:

Որոշ ծաղկաբույսերի բացվելու ժամկետները պայմանավորված են օրվա ջերմային ռեժիմով: Գիշերը բացվում են այն ծաղիկները, որոնք վատ են դիմանում արեգակնային ուժեղ ճառագայթմանը: Ցերեկը մեծ մասամբ բացվում են լուսասեր տեսակները:

Այս հետաքրքիր երևույթը դեռևս լրիվ չի ուսումնասիրված: Լավ կլիներ, որ դուք ձեր շրջապատում ուսումնասիրեիք վայրի ծաղիկների բացվելու և փակվելու ժամկետները և այդ մասին տեղեկություններ հաղորդեիք մեզ:

Իսկ ովքեր ցանկանում են ծաղիկների ժամացույցներ պատրաստել, կարող են դիմել մեզ, սերմը և անհրաժեշտ խորհուրդներ ստանալու համար: Դիմեք հետևյալ հասցեով. Երևան, Ավան, Բուսաբանական այգի:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

## ՋԵՐՄԱՆՔ

Դաշնամուրի մոտ մի փոքրիկ տղա էր նստած: Նրա մատները արագ ու վարժ սահում էին ստեղների վրայով, իսկ ոտքերը

չէին հասնում հատակին: Ասենք, նա ձգել էր աջ ոտքը ու մի կերպ հասցրել դաշնամուրի ոտնակին և այդ պատճառով թվում էր ավելի շուտ կիսականգնած, քան նստած:

Դյութական հնչյունները ողողել էին սենյակը: Փոքրիկը գունատ էր, և նրա վտիտ մարմինը ցնցվում էր ձեռքերի ամեն մի հարվածից: Բայց մեղեդին, որ դուրս էր թռչում նրա մատների տակից, պայծառ էր ու լուսավոր:

Նրան լսում էր մի ուրիշ տղա: Խոր բազկաթոռի մեջ ընկղմված, խելամիտ աչքերը լայն բացած, նա քարացել էր զարմանքից: Եվ երբ փոքրիկն ավարտեց նվագը, նա իսկույն չկարողացավ խոսել:

Հետո, զսպելով հուզմունքը, ասաց.

— Դու ի՞նքդ ես հորինել այդ երաժշտությունը:

— Իհարկե ինքս, ի՞նչ կա որ:

— Չեմ հասկանում, ինչպե՞ս են երաժշտություն հորինում: Դա շատ դժվա՞ր է երևի:

— Ո՛չ, շատ հեշտ է: Պետք է միայն գործիքի վրա վերարտադրել այն պատկերներն ու հնչյունները, որ նախապես ծագում են գլխումդ: Իսկ հետո կարելի է և նոտագրել: Ես կարող եմ ուզածդ պատկերը հանպատրաստից նվագել դաշնամուրի վրա:

— Դու, երևի, հանճար ես,— ասաց տղան, հետո կամացուկ ավելացրեց.— Ես բանաստեղծություններ եմ գրում, բայց դա անհամեմատ ավելի հեշտ է:

— Հե՞շտ... դա շատ ավելի դժվար է,— ասաց փոքրիկը,— ես միշտ զարմանում եմ, թե ինչպե՞ս են կարողանում բանաստեղծություններ գրել:

Նվագողը Վոլֆգանգ Ամադեյ Մոցարտն էր, ունկնդրողը՝ Յոհան Վոլֆգանգ Գյոթեն:

*Գերմ. վերապատմեց*
*ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԸ*

# ԱԿՆԱՐԿ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՄԵՆԱԽՈՐ ՀՈՐԱՆԻ ՄԱՍԻՆ

*ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ*

Ես ոչ մի պատուհանի առաջ այդքան երկար չէի կանգնել: Մանավանդ գիշեր ժամանակ: Ձյունը փայլում էր պայծառ ու շլացուցիչ և դրանից մութը դալկացել, կաթնագույն էր դարձել: Մրրիկը կատաղած քերում էր լեռան կողերը: Ինչ-որ բան (գուցե լեռների համառությունը), նրան դուր չէր գալիս: Մի կարմիր ու խոշոր լուսին, պարմանալի խոշոր լուսին, կախվել էր պատուհանից, այնքան մոտ, որ ես զարմանում էի, թե ինչո՞ւ են մարդիկ արբանյակներ հնարում նրան հասնելու համար: Բավական էր միայն վերարկու հագնել ու դուրս գալ փողոց և իսկույն քոնը կլինեին լուսինը, սառցե բյուրեղներն ու միլիարդավոր աստղերը, որոնք արծաթե կնգուղով էին լցրել երկինքը:

Այստեղ ու այնտեղ փայլփլում էին գրպանի լապտերները: Թունելագործները հերթափոխի էին գնում: Նրանք քայլում էին դանդաղ, առանց շտապելու և չգիտես ինչու գետնին էին նայում: Միայն գետնին:

— Հանվի՛ր,— երբ հանդերձարան հասանք, ասաց թունելախորշի պետը:

Ես հանեցի վերարկուս:

— Հանվի՛ր,— կրկնեց նա:

Ես հանեցի բաճկոնս, բրդե սվիտրս:

— Հանվի՛ր,— շտապեցրեց նա,— հերթափոխը հինգ րոպեից իջնում է:

Հանդերձարանից հորան ձգվող փայտյա անցուղու մեջ խմբվել էին թունելագործները: Նրանք բոլորն էլ մերկ էին՝ սև վարտիքով ու ճերմակ սկաֆանդրով:



— Այսօր քանի՞ աստիճան է ցուրտը:

— Քառասուն:

— Լավ է, եղանակները տաքանում են:

Հորանի սև երախը վիշապի պես գոլորշի էր արտաշնչում նրա շուրջը ժանիքների պես փայլփլում էին սառցե հսկա լուլաները:

— Այ, սրանով սառը օդ ենք մղում թունելախորշ, սրանք պոմպերն են,— ոտքով սառցապատ խողովակներին էր խփում թունելախորշի պետը՝ Նորայրը,— հիմա մենք վեց հարյուր վաթսունութ մետր իջնում ենք ցած:

Մեր վամբյուղը թրմփաց ու կանգ առավ:

— Ջուր բերե՞լ եք, ջո՛ւր, ծարավ ենք:




## ՀԵՌՈՒՍՏԱՑՈՒՅՑԻ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՎՐԱ

Օրեգոնի (Նահանգ ԱՄՆ-ում) բժշկական ծառայության տվյալների համաձայն, հեռուստացույցը խիստ բացասաբար է ազդում կենդանիների վրա: Մի քանի օր շարունակ մի ժամով հեռուստացույց դիտելը շանը դարձնում է կովարար: Գանգրամազ շները, որոնք օրը 3—4 ժամ հեռուստացույց են դիտում, մի քանի օրվա մեջ նկատելիորեն կորցնում են ախորժակը: Ինչ վերաբերում է թութակներին, ապա սրանք նույնիսկ հիվանդանում են հինգ ժամ անընդհատ հեռուստացույց դիտելիս:

✦

Բոլոր տեսակի թռչուններից միայն կոլիբրին կարող է դեպի ետ թռչել:

✦

Օձերն ականջ չունեն: Նրանք ձայնային տատանումներն ընկալում են լեզվով:

✦

Թռչող թռչուններից ամենածանրը հսկա կանյուկն է (լալկան բազե): Արու կանյուկի քաշը հասնում է 16,5 կիլոգրամի, իսկ թևերի երկարությունը՝ 2,5 մետրի:

✦

Գիշատիչ կենդանիներից ամենափոքր սիրտ ունեցողը առյուծըն է:

✦

Երկրագնդում ապրում են մոտ մեկ միլիոն տեսակի կենդանիներ, ընդ որում՝ 750 հազար միջատ, 28 հազար թռչուն, 20 հազար ձուկ, 13 հազար տեսակի կաթնասուն և այլն:

*Թարգմ. Ս. ՋԵՐՋԵՐՅԱՆԻ*



## ԲԱՆԻ՞ ՏԱՐԵԿԱՆ Է ԲԱԶԿԱԹՈՌԸ

Վատիկանը շատ էր հպարտանում մի բազկաթոռով, որի վրա, իբր, երկու հազար տարի առաջ նստել է Պետրոս առաքյալը: Բայց երբ Հռոմի պապի նախաձեռնությամբ ստեղծված գիտական խումբը երկարատև ու մանրազնին ուսումնասիրեց «Պետրոս առաքյալի գահը», պարզվեց, որ այն պատրաստվել է 875 թվից ոչ շուտ:



Իմ աչքերը դեռ չէին վարժվել խավարին, դրա համար թվում էր, թե աղաղակները լեռան ընդերքից են գալիս՝ ժայռերի միջից: Ես մի քանի քայլ արեցի ու կգացի, որ օդը չի բավարարում:

— Որքա՞ն է ջերմությունը:

— Քառասուն, բայց փաթսուն էլ է սպասվում:

— Լավ քարաբաղնիս է, չէ՞,— փորձեց սրամտել կողքիս կանգնած մի տղա:

Ես ձայն չհանեցի ու խավարի մեջ փորձեցի գտնել նրա դեմքը: Ինչպե՞ս չէր շոգում, երբ իմ մարմինը մի ակնթարթում ջուր դարձավ:

Նորայրը ձեռքը դրեց տղայի ուսին.

— Ծանոթացիր Լևոնի հետ, մեր թունելախորշի ամենաջահել աշխատողն է:

— Ո՞ր թվի ծնված ես, Լևոն:

— 1954:

— Դպրոցն ավարտե՞լ ես:

— Այս տարի ավարտեցի, Երևանի Մռավյանի անվան դպրոցը:

— Երևի բարձրագույն չընդունվեցիր, հա՞...

Լևոնը աչքերը ցած խոնարհեց.

— Իսկ ո՞րն է լավ, բարձրագույնում սովորե՞լը, թե՞ Արփա-Սևանում աշխատելը: Համ էլ ինստիտուտը Սևանա լիճը չի, կըսպասի:

— Բա ծնողնե՞րդ, նրանց ինչպե՞ս համոզեցիր:

— Ինչո՞ւ պիտի համոզեի, նրանք էլ են այստեղ:

— Հայրն էլ, մայրն էլ, մորաքույրն էլ, մորաքրոջ ընտանիքն էլ, երկու քեռիներն էլ,— մատները ծալելով հաշվում էր Նորայրը:

Սակայն նա չկարողացավ վերջացնել, որովհետև հորատանցողները բերեցին ծակիչները: Բրիգադավար Առյուծիկը նշան արեց ժայռի կրծքի վրա ու մոտորները խուլ հռնդացին: Թվաց, թե մեր գլխավերևում սկսեցին ճռճվել

## Արեգակնային համակարգի մոլորակները

# Մ Ա Ր Ս

Ամենախորհրդավոր մոլորակի՝ Մարսի վրա հազվադեպ են ամպեր լինում, որը և բարենպաստ պայմաններ է ստեղծում նրա մակերևույթի ուսումնասիրության համար: Դիտումների ամենանպաստավոր ժամանակը այսպես կոչված Մեծ դիմակայությունն է, երբ Մարսը առավելագույն չափով մոտենում է Երկրին, գտնվելով Արևին հակառակ դիրքում: Այս երևույթը տեղի է ունենում 15—17 տարին մեկ անգամ:

Մարսը Արևի շուրջը մի պտույտ է կատարում 687 երկրային օրում՝ 228 միլիոն կմ միջին հեռավորության վրա: Իր առանցքի շուրջը պտտվում է արևմուտքից արևելք՝ 24 ժամ 37 րոպե 23 վայրկյանում: Տրամագիծը 6780 կմ է:

1877 թ. մեծ դիմակայության ժամանակ Սկիապարելին Մարսի վրա հայտնաբերեց արտակարգ ուղիղ գծերի ցանց: Դրանից քիչ առաջ կառուցվել էր Սուեզի ջրանցքը, և Մարսի գծերի երկրաչափական ճշգրտությունը առիթ դարձավ այն ենթադրության, թե այդ ցանցը բանական արարածների կառուցած վիթխարի ոռոգիչ սիստեմ է: Չնայած գիտնականների մի մասը ժխտում էր բանական արարածների գոյությունը Մարսի վրա, վեճերը շարունակվեցին բավականին երկար ժամանակ: Միայն երբ ստեղծվեցին հզոր աստղադիտակներ և միջմոլորակային ավտոմատ կայաններ, ապացուցվեց, որ այդ գծերը ջրանցքներ չեն:

Մարսի կարմիր և նարնջագույն բծերը պայմանականորեն անվանում են «աշխարհամասեր», իսկ մուգ պողպատագույն և կանաչ բծերը՝ «ծովեր», չնայած հայտնի է, որ դրանք ջրային տարածություններ չեն: Ամերիկյան «Մարիներ—6» և «Մարիներ—7» ավտոմատ կայանների կատարած լուսանկարներից պարզվեց, որ Մարսի մակերևույթը կազմված է բազմաթիվ խառնարաններից, իսկ «քաոսային» շրջանները, ըստ երևույթին, լեռներ և փոքր հովիտներ են:

Մարսի կլիման արտակարգ խիստ է: Երկրի համեմատ՝ միջին ջերմաստիճանը ցածր է—40° —50° C, իսկ բևեռային շրջանում լինում է —140°C—150°C: Հետևաբար, բևեռային սպիտակ գլխարկը պետք է կազմված լինի ոչ թե ձյունից ու եղյամից, ինչպես առաջ կարծում էին, այլ ածխաթթու գազի սառեցումից: Մարսի վրա կենդանի էակների գոյությունը հաստատող ոչ մի փաստ չկա:

Ա. Հոլը 1877 թ. հայտնագործեց Մարսի երկու արբանյակները՝ Ֆոբոսը և Դեյմոսը: Առաջինն ունի 16 կմ. տրամագիծ և Մարսի շուրջը պտտվում է 9400 կմ. հեռավորության վրա: Երկրորդի տրամագիծը կրկնակի փոքր է, բայց ավելի հեռու է գտնվում Մարսից՝ 23500 կմ.: Ֆոբոսի շարժման որոշ անճշտությունները հիմք դարձան այն ֆանտաստիկ կարծիքի, թե նա, իբր, Մարսի արհեստական արբանյակն է:

Մոլորակներից ոչ մեկը թերևս այնքան վեճերի առիթ չի տվել, որքան Մարսը, և այդ պատճառով էլ նա միշտ եղել է գիտնականների ուշադրության կենտրոնում: Արդեն որոշակի հաջողություններ կան Մարսի ուսումնասիրման գործում, բայց քիչ չեն նաև չպարզաբանված երևույթները: Գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումները, առաջին հերթին՝ ավտոմատ կայանները, կշարունակեն բացահայտել Մարսի գաղտնիքները:

---

սրածայր լեռների գագաթները: Մթնոլորտը լցվեց հեղձուցիչ օդով, նեղ պատերի մեջ ժայռե-ժայռ կարկվող աղմուկով ու փոշով, քարերից պոկվող փոշով: Մի ջլապինդ, կապտաչ տղա երեսուն կիլոգրամանոց ծակիչը հենել էր փորին ու ամբողջ ուժով հարձակվել ժայռի վրա: Ժայռից կայծ էր դուրս գալիս, բայց նա չէր ուզում տեղի տալ: Ո՞վ էր այդ քսանվեց տարեկան տղան, որ պիտի կոտրեր դարերով կարծրացած իր քարե համառությունը: Եվ որպեսզի ապացուցի ուժը, ժայռը ծուխ արձակեց, տնքաց ու միանգամից ետ շպրտեց երեսուն կիլոգրամանոց ծակիչն էլ, տղայի մարմինն էլ: Մի ակնթարթում տարբեր լեզուներով խոսող ու մեր երկրի ամենահեռավոր անկյուններից այստեղ աշխատելու եկած հորատողները նետվեցին դեպի իրենց ընկերը, և նա, որ մինչ այդ թվում էր մենակ ու ծիծաղելիորեն անկոր, հիմա կանգնած էր բարեկամներով շրջապատված: Նա թքոտեց ձեռքերի մեջ, ժայռից էլ համառ մի հայացք նետեց լեռան վրա և նորից միացրեց մոտորը: Անցքերը բալլմակետերի պես շատացան: Այդ անցքերի մեջ հետո պետք է պայթուցիկ նյութ լցվեր, միացվեին պատրույգները, պայթեցվեին... որից հետո ամբարձիչները երկաթե ձեռքերով ապարները լցնելու էին վագոնների մեջ և դուրս էին տանելու թունելից:

Թունելախորշում, այդ տոթի, աղմուկի ու թոհուբոհի մեջ, ամենահեշտը ժամանակի զգացումը կորցնելն է: Դրա համար, երբ վագոնները մեկ դեպի ելքն էին տանում, ոչ ոք չէր կարող ասել, թե մենք քանի օր, քանի ժամ, կամ քանի րոպե մնացինք գետնի տակ:

— Այսօր երկու ցիկլ տվեցինք, — սրբելով քրտինքը, ասաց Նոբայրը:

Նրանք մեկ հերթափոխի ընթացքում երկու պայթեցում էին

## ԱՆՏԱՐԿՏԻԴԱՅԻ ՏԵՂԸ

Բոլորը լուռ նստած էին: Քարտեզի մոտ դաս էր պատասխանում Աշոտը: Նա պատմում էր Անտարկտիդայի և նրա հիմնական բնակիչների՝ պինգվինների մասին: Երեկոյան հեռուստացույցով «Ճանապարհորդների ակումբի» հաղորդումն էլ Անտարկտիդայի և պինգվինների մասին էր, որը նա ուշադիր լսել էր:

Նա ոգևորված շարունակում էր պատմել: Ուսուցիչը ընդհատեց.

— Շատ լավ, այդ բոլորը ճիշտ է, իսկ այժմ քարտեզի վրա ցո՛ւյց տուր Անտարկտիդան:

Աշոտը լռեց: Նա մեկ նայում էր քարտեզին, մեկ ուսուցչին, մեկ էլ դասարանին, և ոչ մի կերպ չէր կարողանում հիշել, թե որտեղ է Անտարկտիդան: Աշակերտները ձեռքերով ինչ-որ շարժումներ էին կատարում քարտեզի ուղղությամբ, բայց նա գլխի չէր ընկնում, թե որտեղ են ցույց տալիս:

Այդ ժամանակ աշակերտներից մեկը՝ Ժիրայրը կամաց հուշեց նրան.

— Աշոտ, տակն է, տակը, քարտեզի տակը նայիր:

Լսելով այդ, Աշոտը ժպտալով դարձավ ուսուցչին և ասաց.

— Մոռացել էի... հիշեցի...

Նա շրջեց քարտեզը, որպեսզի մյուս երեսին ցույց տա Անտարկտիդան:

## ԱՀԱ՛ ԱՐԱՐԱՏ ԼԵՌԸ

Երևանի դպրոցներից մեկում, աշխարհագրության դասին, ուսուցիչը պահանջեց Սեդրակից ցույց տալ Արարատ լեռը: Սեդրակը երկար նայում էր քարտեզին և ոչ մի կերպ չէր գտնում Արարատը: Քարտեզին երկար նայելուց հետո, հանկարծ շրջվեց, դուրս նայեց դասարանի բաց պատուհանից և ձեռքը պարզելով, ցույց տվեց հեռվում երևացող լեռը.

— Ահա՛ Արարատ լեռը:

*ՖՐՈՒՆՋԵ ՄԱԼԽԱՍՅԱՆ*

## ՀԱԶԱՐ ՈՒ ՄԻ ՀԱՐՑ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

1. Ո՞ր աշխարհամասում է, որ քանի հյուսիս ենք գնում, այնքան տաքանում է:

2. Հիշեք ՍՍՀՄ-ի եվրոպական մասի այն քաղաքների անունները, որոնք կրում են համանուն գետերի անունները, որոնց ափին էլ նրանք հիմնվել են:

3. Սովետական Միության ո՞ր արշիպելագում են գտնվում Պիոներ և Կոմսոմոլեց կղզիները:

4. Որտե՞ղ է գտնվում աշխարհի ամենամեծ լեռնային սիստեմը և ի՞նչ գիտեք նրա անվան մասին:

5. Սովետական Միության ո՞ր գետն է, որով նավարկելիս, եթե դուրս գանք աջ ափ, կգտնվենք Եվրոպայում, իսկ եթե ձախ ափ՝ կլինենք Ասիայում:

6. Որտե՞ղ են գտնվում Ռոբինզոն Կրուզո և Ալեքսանդր Սելկիրկ կղզիները և ինչի՞ հետ են կապված այս անունները:

*ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ*

կատարել ու երկու անգամ էլ երեսունութ վագոն ապարը թափել դուրս: Նրանք այսօր չորսից-հինգ մետր առաջ էին գնացել, չորսից-հինգ մետր մոտեցել Սևանին: Ճիշտ է, դրա համար բոլորն էլ մի քիչ ավելի էին քրտնել ու ավելի լարել մկանները, բայց ուրիշ ելք չկար: Սևանը իրենց էր սպասում, նրանք ամեն գիշեր լեռան գագաթից տագնապով ու սիրով նայում էին լճի լուրթ հայելուն:

* * *

Երբ մենք դուրս եկանք, մթնշաղ էր: Լեռների գագաթները խավարի մեջ ճերմակ գլուխները պարզել էին դեպի աստղաշատ երկինքը, իսկ մրրիկը, բորենու նման ոռնալով տարօրինակ քանդակներ էր դաջում սարերի կողերին: Ցերեկվա փափուկ ձյունը նորից կարծրացավ ու սկսեց փըշրվող ապակու պես խշրտալ: Փողոցները մարդաշատ դարձան: Տաք վերարկուների մեջ փաթաթված թունելագործները առվակ առ առվակ դուրս էին գալիս տներից ու իրար միանալով՝ հոծ գետ կազմում: Գիշերային հերթափոխն էր, թունել էր իջնում: Չյան ճերմակ ֆոնին շատ լավ ընդգծվող այդ սև գետը հոսեց մինչև հորանի մուտքըն ու վեց հարյուր վաթսունութ մետր բարձրությունից գահավիժեց ցած: Դեպի խավարը: Դեպի տոթը: Այնքան սովորական ու բընական էր մարդկանց քայլվածքը, որ դժվար էր անգամ հավատալ, որ գիշերվա այս ուշ ժամին նըրանք ստորերկրյա մի ուրիշ աշխարհի մտան, որպեսզի փրկեն մեր լեռների գեղեցկուհուն, վերադարձնեն նրան մարդկանց:

Գալիք բոլոր, բոլոր սերունդներին:

Գալիք բոլոր, բոլոր դարերին:
Հավերժությանը:





## ԽԱՉԲԱՌ «ՖՈՒՏԲՈԼ»

1. Բրազիլացի հայտնի ֆուտբոլիստ։ 2. ՍՍՀՄ հավաքականի դարպասապահ։ 3. 1969 թ. Սովետական Միության լավագույն ֆուտբոլիստը։ 4. «Արարատ» թիմի խաղացող։ 5. Թբիլիսիի «Դինամո» թիմի պաշտպան, ՍՍՀՄ հավաքականի անդամ։ 6. Կիևի «Դինամոյի» կիսապաշտպան։ 7. 1970 թ. Մեքսիկայում կայացած աշխարհի չեմպիոնատի լավագույն ռմբարկուն։ 8. 1971 թ. ՍՍՀՄ առաջնության արծաթե մրցանակակիր։ 9. Անգլիացի հայտնի ֆուտբոլիստ։ 10. 1964 թ. ՌՍՖՍՀ-ի գավաթակիր իսպանական թիմ։ 11. ՍՍՀՄ օլիմպիական թիմի կիսապաշտպան։ 12. 1966 թ. աշխարհի չեմպիոն դարձած Անգլիայի հավաքականի ավագը։ 13. ՍՍՀՄ հավաքականի հարձակվող։ 14. Մոսկվայի «Դինամո» թիմի խաղացող։

Պատասխանները ճիշտ լրացնելուց հետո, նըշված ուղղահայաց վանդակներում կկարդաք Ֆեդոտովի անվան ակումբի անդամ հայ ֆուտբոլիստի անունը և ազգանունը։

Կազմեցին՝ ՍԱՄՎԵԼ ՄՈՒՍԱՅԵԼՅԱՆԸ
և ԱՐՏԱՎԱԶԴ ՍԱՐԳՍՅԱՆԸ




Լույս է տեսնում 1923 թվականից։



# ՊԻՈՆԵՐ

№ 6 հունիս 1972 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: 375200. Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 06620։ Պատվեր՝ 827։ Տպաքանակ՝ 76100։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 21/VI 1972 թ.։

**ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։**

Գինը 10 կ.



# ԴԵՊԻ ԱՆՏԱՌ

ՄԱՄԻԿՈՆ ՆԵՐՍԻՍՅԱՆ

Երբ որ ամառն է իջնում,
Տոթ ու շոգն են մեզ տանջում,
Դո՛ւ ես հեռվից կանչում մեզ,
Անտա՛ռ կովասուն:

Եվ գալիս ենք, մենք գալիս,
Մոտիկներից ու հեռվից,
Քո գրկի մեջ կարոտով
Խաղում, երազում:

Եվ գույնզգույն մենք հագած,
Քո աշխարհով հիացած,
Գաղտնիքներն ենք քո բոլոր
Հասկանալ ուզում:

Որ շոգերը երբ անցնեն,
Դպրոցները երբ բացվեն,
Գնանք, պատմենք քո մասին,
Անտա՛ռ կովասուն:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ